Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 16 (35)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945

Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 16 (35)

«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1945

# ԸՆԿԵՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ԴԻՄՈՒՄԸ ԺՈՂՈՎՐԴԻՆ

Ընկերնե՛ր:

Հայրենակիցնե՛ր և հայրենակցուհինե՛ր:

Այսօր, սեպտեմբերի 2-ին, Ճապոնիայի պետական և զինվորական ներկայացուցիչները ստորագրեցին անվերապահ կապիտուլյացիայի ակտը: Ծովերում ու ցամաքի վրա գլխովին ջախջախված և Միավորված Ազգերի զինված ուժերով բոլոր կողմերից շրջապատված Ճապոնիան իրեն ճանաչեց պարտված և զենքը ցած դրեց:

Համաշխարհային ֆաշիզմի և համաշխարհային ագրեսիայի երկու օջախ էին առեղծվել ներկայիս համաշխարհային պատերազմի նախօրյակին՝ Գերմանիան՝ Արևմուտքում և Ճապոնիան՝ Արևելքում: Այդ նրանք էին, որ հրահրեցին երկրորդ համաշխարհային պատերազմը: Այդ նրանք էին, որ մարդկությունը և նրա քաղաքակրթությունը կանգնեցրին կործանման եզրին: Համաշխարհային ագրեսիայի օջախը Արևմուտքում լիկվիդացվեց չորս ամիս առաջ, որի հետևանքով Գերմանիան հարկադրված եղավ կապիտուլյացիայի դիմել: Դրանից չորս ամիս հետո լիկվիդացվեց համաշխարհային ագրեսիայի օջախը Արևելքում, որի հետևանքով Ճապոնիան, Գերմանիայի գլխավոր դաշնակիցը, նույնպես հարկադրված եղավ ստորագրել կապիտուլյացիայի ակտը:

Այդ նշանակում է, որ վերջացավ երկրորդ համաշխարհային պատերազմը:

Այժմ մենք կարող ենք ասել, որ ամբողջ աշխարհի խաղաղության համար անհրաժեշտ պայմաններն արդեն նվաճված են:

Հարկ է նշել, որ ճապոնական զավթիչները վնաս են հասցրել ո՛չ միայն մեր դաշնակիցներին՝ Չինաս-

տանը, Ամերիկայի Միացյալ Նահանգներին, Մեծ Բրիտանիային: Նրանք ամենալուրջ վնաս են հասցրել նաև մեր երկրին: Դրա համար էլ մենք դեռևս մեր հատուկ հաշիվն ունենք Ճապոնիայի հետ:

Մեր երկրի դեմ Ճապոնիան իր ագրեսիան սկսեց դեռևս 1904 թվի ռուս-ճապոնական պատերազմի ժամանակ: Ինչպես հայտնի է, 1904 թվի փետրվարին, երբ Ճապոնիայի և Ռուսաստանի միջև բանակցությունները դեռևս շարունակվում էին, Ճապոնիան, օգտվելով ցարական կառավարության թուլությունից, անսպասելիորեն և ուխտադրուժ կերպով, առանց պատերազմ հայտարարելու, հարձակվեց մեր երկրի վրա և Պորտ-Արթուրի շրջանում գրոհեց ռուսական էսկադրայի վրա, որպեսզի շարքից դուրս հաներ ռուսական մի քանի ռազմանավ և դրանով իսկ նպաստավոր դրություն ստեղծեր իր նավատորմի համար: Եվ նա իրոք շարքից հանեց Ռուսաստանի երեք առաջնակարգ ռազմանավ: Բնորոշ է, որ դրանից 37 տարի հետո, Ճապոնիան այդ ուխտադրուժ պրիոմը ճշգրտորեն կրկնեց Ամերիկայի Միացյալ Նահանգների նկատմամբ, երբ նա 1941 թվին հարձակվեց Ամերիկայի Միացյալ Նահանգների Պիրլ-Հարբոր ռազմա-ծովային բազայի վրա և շարքից հանեց այդ պետության մի շարք գծանավեր:

Ինչպես հայտնի է, Ճապոնիայի դեմ մղված պատերազմում Ռուսաստանը այն ժամանակ պարտություն կրեց, իսկ Ճապոնիան ցարական Ռուսաստանի պարտությունից օգտվեց, որպեսզի Ռուսաստանից կտրվեր Հարավային Սախալինը, հաստատվեր Կուրիլյան կղզիներում և այդպիսով մեր երկրի համար Արևելքում փականքի տակ դներ օվկիանոս դուրս գալու բոլոր ելքերը, հետևաբար նաև Սովետական Կամչատկայի և Սովետական Չուկոտկայի նավահանգիստները տանող բոլոր ելքերը: Պարզ էր, որ Ճապոնիան իրեն խնդիր էր դնում Ռուսաստանից պոկել նրա ամբողջ Հեռավոր Արևելքը:

Սակայն դրանով չեն սպառվում Ճապոնիայի զավթողական գործողությունները մեր երկրի դեմ: 1918 թվին, մեր երկրում սովետական համակարգի



հաստատումից հետո, Ճապոնիան, օգտվելով սովետական երկրի նկատմամբ Անգլիայի, Ֆրանսիայի, Ամերիկայի Միացյալ Նահանգների այն ժամանակվա թշնամական վերաբերմունքից, և հենվելով նրանց վրա, նորից հարձակվեց մեր երկրի վրա, օկուպացրեց Հեռավոր Արևելքը և չորս տարի տանջում էր մեր ժողովրդին, կողոպտում Սովետական Հեռավոր Արևելքը:

Սակայն այդ էլ դեռ բոլորը չէ: 1938 թվին Ճապոնիան Խասան լճի շրջանում, Վլադիվոստոկի մոտ, նորից հարձակվեց մեր երկրի վրա, նպատակ ունենալով շրջապատել Վլադիվոստոկը, իսկ հետևյալ տարին Ճապոնիան իր հարձակումը կրկնեց արդեն մի ուրիշ տեղում, Մոնղոլական ժողովրդական Ռեսպուբլիկայի շրջանում, Խալխին-Գոլի մոտ, նպատակ ունենալով ներխուժել սովետական տերիտորիան, կտրել մեր Սիբիրյան երկաթուղային մագիստրալը և Հեռավոր Արևելքը անջատել Ռուսաստանից:

Ճիշտ է, Ճապոնիայի գրոհները Խասանի և Խալխին-Գոլի շրջանում սովետական զորքերի կողմից լիկվիդացվեցին ճապոնացիների համար մեծ խայտառակությամբ: Հավասարապես հաջողությամբ լիկվիդացվեց 1918—22 թվերի ճապոնական ռազմական ինտերվենցիան և ճապոնական օկուպանտները դուրս շպրտվեցին մեր Հեռավոր Արևելքի շրջաններից: Սակայն 1904 թվին ռուս-ճապոնական պատերազմի շրջանում ռուսական զորքերի կրած պարտությունը ծանր հիշողություններ էր թողել ժողովրդի գիտակցության մեջ, այդ հիշողությունը սև բծի նման ընկել էր մեր երկրի վրա: Մեր ժողովուրդը հավատում և սպասում էր, որ կհասնի այն օրը, երբ Ճապոնիան կջախջախվի և բիծն էլ կվերացվի: Մենք, հին սերնդի մարդիկս, քառասուն տարի սպասում էինք այդ օրվան: Եվ ահա այդ օրը հասավ: Այսօր Ճապոնիան իրեն ճանաչեց պարտված և ստորագրեց անվերապահ կապիտուլյացիայի ակտը:

Այդ նշանակում է, որ Հարավային Սախալինը և Կուրիլյան կղզիները կանցնեն Սովետական Միությանը և այժմյանից դրանք կծառայեն ոչ թե որպես Սո-

վետական Միությանը օվկիանոսից կտրելու միջոց և մեր Հեռավոր Արևելքի վրա ճապոնական հարձակման բազա, այլ որպես օվկիանոսի հետ Սովետական Միության անմիջական կապի միջոց և ճապոնական ագրեսիայից մեր երկրի պաշտպանության բազա:

Մեր սովետական ժողովուրդը ուժ և աշխատանք չի խնայել հանուն հաղթանակի: Մենք ապրել ենք ծանր տարիներ: Բայց այժմ մեզնից յուրաքանչյուրը կարող է ասել՝ մենք հաղթեցինք: Այժմյանից մենք կարող ենք մեր Հայրենիքը փրկված համարել Արևմուտքում՝ գերմանական արշավանքի և Արևելքում՝ ճապոնական արշավանքի սպառնալիքից: Հասավ բաղձալի խաղաղությունը ամբողջ աշխարհի ժողովուրդների համար:

Շնորհավորում եմ Ձեզ, իմ թանկագին հայրենակիցնե՛ր և հայրենակցուհինե՛ր, մեծ հաղթանակի առթիվ, պատերազմի հաջող ավարտման, ամբողջ աշխարհում խաղաղության հաստատման առթիվ:

Փա՜ռք Սովետական Միության, Ամերիկայի Միացյալ Նահանգների, Չինաստանի և Մեծ Բրիտանիայի զինված ուժերին, որոնք հաղթանակ տարան Ճապոնիայի դեմ:

Փա՜ռք մեր Հեռավոր Արևելյան զորքերին և Խաղաղօվկիանոսյան Ռազմա-Ծովային Նավատորմին, որոնք պաշտպանեցին մեր Հայրենիքի արժանապատվությունը:

Փա՜ռք մեր մեծ ժողովրդին, հաղթող ժողովրդին:

Հավերժ փա՜ռք մեր Հայրենիքի պատվի և հաղթանակի համար մղված մարտերում զոհված հերոսներին:

Թող կեցցե՜ ու բարգավաճի մեր Հայրենիքը:

---

Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ

ՎՖ 02050 պ. № 1062 տիր. 5.000

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից թերթերի և ամսագրերի տպարան—Երևան